### ՈՒՐԻՇ ԿԱՐԵՒՈՐ ԼՈՒՐԵՐ

Ուրիշ աղբիւրէ մը կը հաղորդեն թէ պիտի քննուի նաեւ հիւլէական զաղտնիքները փոխանակելու խնդիրը: Չըրչիլ միասին տարած է Անգլիոյ հիւլէական ուժի հաստատութեան նախկին վերատեսուչը, որ իր մասնագէտ խորհրդականն է այս հարցին մէջ: Այզընհաուըր ալ հրաւիրած է Մ. Նահանգներու հիւլէական ուժի յանձնաժողովին նախագահը: Խորհրդակցութեանց կը մասնակցի նաեւ Ատլանտեան կազմակերպութեան ընդհ. քարտուղարը, լորտ Իսմէյ: Տեղական թերթերը ցաւով գիտել կուտան թէ Ֆրանսական պատուիրակութիւնը բազմանդամ ըլլալով հանդերձ հիւլէական մասնագէտ չունի:

× Խորհրդաժողովի մասին հրատարակուած առաջին պաշտօնական զեկոյցը կ'ըսէ թէ Այզընհաուըր, Չըրչիլ եւ Լանիէլ առաջին նիստը գումարեցին ընկերակցութեամբ երեք արտաքին նախարարներուն, քննելով աշխարհի ընդհանուր կացութիւնը: Երեք արտաքին նախարարները երէկ մասնաւոր նիստ մը գումարեցին, քննելու համար Խ. Միութեան վերջին ծանուցագիրը: Ամէն օր ժողով պիտի ունենան:

× Նախագահ Այզընհաուըր Պերմուտա հասած ատեն յայտարարեց.

— «Ինծի համար մեծ ուրախութիւն է այս գեղեցիկ երկրին մէջ հանդիպիլ վազեմի բարեկամներու: Կը յուսամ — նոյն իսկ գիտեմ — որ մեր խօսակցութիւնները պիտի յանգին լաւագոյն հասկացողութեան մը չահակից ժողովուրդներու միջեւ եւ անկեղծօրէն կը յուսամ թէ օգտակար պիտի ըլլան մեր երկիրներուն համար»:

× Մոսկուայի հեռագրական գործակալութիւնը, Թաս, գոհացաւ հաղորդելով ժողովին գումարման լուրը: Իսկ Ռատիօ-Մոսկուա յիշելով «Նոր Ժամանակներ» թերթին մէկ յօդուածը, կ'ըսէ թէ արեւմտեան պետութիւնները հարկադրուեցան խոստովանիլ թէ ասիական խնդիրները նոյնքան սերտողական են որքան եւրոպական հարցերը: «Այս պարագան կ'ապացուցանէ թէ կարել իչէ անտեսել չինական հանրապետութեան մասնակցութիւնը»:

ПАЛ

ՊԱԼՔԱՆԵԱՆ ԴԱՇԻՆՔԻՆ դէմ բուռն յարձակողականի մը ձեռնարկած են արեւելեան երկիրները: Ինչպէս յայտնի է, այս դաշինքին կը մասնակցին Յունաստան, Եուկոսլաւիա եւ Թուրքիա:

ՕԴԱՆԱՒ մը ջախջախուեցաւ Մարիտա-Պիլլաօ գծին վրայ: Զոհերու թիւը՝ 20:

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՆԱՒ մը թնդանօթի բռնուեցաւ Աքապայի ծոցին մէջ, Եգիպտացիներու կողմէ, երբ 9600 թոն ցորեն կը տանէր արաբ տարագիրներուն համար:

ՖՐԱՆՔԸ հաստատուն վիճակ մը ստացած է չնորհիւ արտաքին օգնութեանց: Տոլարի մթերքը միշտ կ'աւելնայ Հնդկաչինի պատերազմին համար բացուած վարկերով: Բայց Ֆրանքին գնելու կարողութիւնը իջած է, գիտել կուտան մասնագէտներ:

### ԸՆԿԵՐ Գ. ՍԱՐԳԻՍԲԷԳԵԱՆԻ
#### ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Վալանսէն ընկեր Գ. Պ. հազար ֆրանք կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման համար:

Նոյնպէս Վալանսէն Նոր Սեբաստիէն ընկեր Գէորգ Կօշկակարեան հազար ֆր. կը նուիրէ Հ. Յ. Դ. Տան ֆոնտին, հազար ֆր. ալ «Յառաջ»ի բարգաւաճման:

Հ. Յ. Դ. Տան բաժինը ստանալ «Յառաջ»էն:



### ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆԸ ԿԸ ԿԱԶՄԱԿԵՐՊԷ

## ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐԸ

14 Դեկտ. երկուշաբթի իրիկուն, ժամը 9ին, Սալ Մազընոյի մէջ (ռիւ տ'Օպաներ):

Կը նախագահէ՝

Mr. JEAN BALLARD
Directeur des «*Cahiers du Sud*»

Ներկայ կ'ըլլայ եւ իր թարգմանութիւններէն կը կարդայ բանաստեղծ՝

LUC ANDRE MARCEL

Կը խօսին՝

### Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Գ. ՍԱՅԱՊԱԼԵԱՆ (ֆրանսերէն)
Անդամ Վառի Ակադեմիային
եւ Կ. ՓՕԼԱՏԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին. — Տիկին ԶԱՊԷԼ ՄՈՐԸՆՈ, Պ. Ֆ. ՀՐԱՉԵԱՆ (երգ), Պ. Լ. ՂԵՒՈՆԴԵԱՆ (ջութակ), Օր. Օր. ԶՐԲԱՇԵԱՆ, Ա. ԹԱԴՈՅԵԱՆ եւ Կ. ՓՕԼԱՏԵԱՆ (արտասանութիւն): Մարսէյլի Հայ արիները եւ արենոյշները (պար):

Դաշնակով կ'ընկերակցին Օր. Օր. Օ-ԹԱՐ եւ ԷՕԺ. ԹԷԼԵԱՆ:

★

### ԳԻՆԵՁՕՆ

Ի պատիւ Շ. ՆԱՐԴՈՒՆԻԻ
(Իր Միջին Արեւելք մեկնելուն առիթով)
Կազմակերպուած ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ կողմէ:

Հանրութեան տրամադրուած սակաւաթիւ տոմսերու համար դիմել. —

H. MALAKIAN, 3, Bl. Th. Turner
et V.DER VARTANIAN, 5, rue du Coq

12 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 9ին, Քաֆէ Նօայի սրահին մէջ:

Մուտք՝ մասնաւոր հրաւիրատոմսով:

### ԽՆՋՈՅՔ

Նախաձեռնութեամբ Փարիզի Հայ Մարզական Միութեան:

Կիրակի, 13 Դեկտ. կէսօրէ վերջ ժամը 4էն 10ը Ազգ. Տան մէջ, 32 ռիւ տը Թրէզիզ: Առատ եւ ճոխ պիւֆէ:

Մուտքը ազատ է:

### ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Ֆրանսահայ իրերօգնութեան Միութեան:

Շաբաթ, 12 Դեկտ., ժամը 21էն մինչեւ լոյս, Պուա Քոլոմպի քաղաքապետարանի սրահին մէջ: 2 ռիւ էթիէն տ'Օրվ կայարանին մօտ: (Սէն Լազարի կայարանէն 7 վայրկեան):

Կը նախագահէ Պուա Քոլոմպի քաղաքապետը՝

Mr. Emile Tricon

Հայկական գեղարուեստական ճոխ բաժին եւ սիրուն անակնկալներ:

Պ. ՎԱՐԴԻԻԱՆԵԱՆԻ

Ռատիոյի մեծ նուագախումբով՝ եւրոպական պարերը մինչեւ լոյս:

Մուտք 200 ֆրանք:

Սեղանները ապահովել դիմելով

U. E. F. A. 9 Ave. Calmels
Bois-Colombes (S.) Tél. CHA. 00-55



### «ՅԱՌԱՋ»Ի ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ

Նկատի առնելով տպագրական ծախքերու, պետական եւ ընկերային տուրքերու ծանրութիւնը եւ ուրիշ նոր հոգեր, այժմէն կը յայտարարենք թէ 1954 ՅՈՒՆՈՒԱՐ ՄԷԿԷՆ ՍԿՍԵԱԼ ՊԻՏԻ ՍՏԻՊՈՒԻՆՔ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԹԷ ՀԱՏԱՎԱՃԱՌԻ ԵՒ ԹԷ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ԳԻՆԵՐԸ:

ՄԻՆՉ ԱՅԴ, ՄԵՐ ԲՈԼՈՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԸ ԿՐՆԱՆ ՕԳՏՈՒԻԼ ՆԵՐԿԱՅ ԳԻՆԷՆ, ՓԱԿԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԻՐԵՆՑ ՀԱՇԻՒՆԵՐԸ ԵՒ ՆՈՅՆԻՍԿ ՎՃԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԻՐԵՆՑ ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԲԱԺՆԵԳԻՆԸ:

ՅՈՒՆՈՒԱՐ 1ԷՆ ՎԵՐՋ ՈԵՒԷ ՎՃԱՐՈՒՄ ՉԸՆԴՈՒՆՈՒԻՐ ՀԻՆ ՍԱԿԵՐՈՎ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիի Աhարոնեան խումբի կողմէ, այս կիրակի ժամը 16էն 23, Ազգ. Տան մէջ, (Ա. յարկ): Կը հրաւիրուին բոլոր մասնաճիւղերը, ինչպէս նաեւ փափաքող հայրենակիցները:

Հաճելի ժամանց: Ճոխ պիւֆէ:



Imp. Araxes - 46, rue Richer, Paris.

### — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՄԱՐՍԷՅԼ. — Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիի «Սիամանթօ» խումբին դասախօսութիւնը այս երկուշաբթի ժամը 21ին: Կը խօսի Աթէնքի գործօն ընկերներէն Պարգեւ Նանարեան:

